Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.—Երևան, ՀԿ(բ)Կ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ ԱՄՐԱՊՆԴՈՒՄ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ Սովետական Միությունում ստորագրությունների հավաքում անցկացնելու վերաբերյալ խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պլենումի որոշումը ջերմ արձագանք գտավ մեր սոցիալիստական Հայրենիքի աշխատավորների մեջ։ Ստորագրությունների հավաքումը գնալով ավելի լայն թափ ու ծավալ է ստանում։ Ստորագրելով այդ պատմական փաստաթղթի տակ, մեր երկրի աշխատավորները օրավուր բազմապատկում են իրենց հաջողությունները ժողովրդական տնտեսության բոլոր ճակատներում, ամրապնդելով մեր սոցիալիստական Հայրենիքի՝ ամբողջ աշխարհի խաղաղության պատվարի ուժն ու հզորությունը։

Մոսկվացիները, ինչպես և մեր ամբողջ ժողովուրդը, ջերմորեն արձագանքեցին խա-

ղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի կոչին։ Մայրաքաղաքի ձեռնարկություններում տեղի են ունենում բազմամարդ միտինգներ՝ նվիրված խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պլենումի որոշման քննարկմանը։ Միտինգներում բանվորները, ծառայողներն արտահայտում են իրենց պատրաստակամությունը՝ աշխատել է՛լ ավելի մեծ եռանդով, անդուլ պայքար մղել խաղաղության համար։

Լ. Մ. Կագանովիչի անվան գնդակավոր առանցքակալների առաջին պետական գործարանում, Ա. Ի. Միկոյանի անվան մսի կոմբինատում, Ս. Մ. Կիրովի անվան ժամացույցի առաջին գործարանում և բազմաթիվ այլ ձեռնարկություններում գումարված միտինգներում հանդես եկան երկրի անվանի մարդիկ։ Իրենց ջերմ, հայրենասիրական ճառերում նրանք նոր, կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին։

Հանդես գալով գնդակավոր առանցքակալների առաջին գործարանում, ինժեներ ընկ. Սոկոլովը, իր ստորագրությունը դնելով Դիմումի տակ, պատմեց, թե ինքն ինչպես է իր ավանդը մուծում խաղաղության գործում, աշխատելով ստեղծել նոր մեքենա-



ներ և զանազան հարմարանքներ, որոնք է՛լ ավելի են թեթևացնելու բանվորների աշխատանքը, բարձրացնելու են աշխատանքի արտադրողականությունը։

«Փարիզյան կոմունա» ֆաբրիկայի մանկական կոշիկի ցեխի հին բանվորուհի ընկ. Զեստովան պարտավորվեց կանգնել խաղաղության ստախանովյան հերթափոխի և ավելացնել առաջին տեսակի արտադրանքի թողարկումը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, տնտեսած նյութերի հաշվին պլանից դուրս արտադրել 500 զույգ կոշիկ։ «Սերպ ի մոլոտ» մետալուրգիական գործարանի մարտենյան ցեխի պողպատաձույլ բանվոր ընկ. Սուբոտինը, ստորագրելով Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, իր ընկերներին կոչ արեց՝ ավելի շատ մետաղ տալ կոմունիզմի մեծ կառուցումների համար, խաղաղության մեծ գործի ամրապնդման համար։

Լենինգրադի «Սևկաբել» գործարանի հիմնական ցեխի բանվորների, բանվորուհիների, ինժեներ-տեխնիկների և ծառայողների միտինգում ելույթ ունենալով, բանվոր Վասիլի Սեմյոնովիչ Կիրիլովը պատմեց, թե պատերազմի դաժան օրերին լենինգրադցիներն

ինչպես էին պաշտպանում իրենց քաղաքը, ինչպես էին պաշտպանում այն ամենը, ինչ ստեղծված է ազատ աշխատանքով։ Պատերազմից հետո սովետական ժողովրդի խաղաղասիրական նպատակների մասին են խոսում նոր տների, ամբողջ թաղամասերի, նոր այգիների ու պուրակների շինարարությունը, կոմունիզմի մեծ կառուցումները։

Խաղաղության շարժման լայն ծավալման իրադրության մեջ, երկրի ձեռնարկություններում ամենուրեք արձագանք գտավ Մոսկվայի «Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի ստախանովականների նախաձեռնությունը։ Այդ նախաձեռնությունը ջերմորեն պաշտպանեցին Սմոլենսկի կոշկագործներն ու կարողները։ Սմոլենսկի կոշիկի ֆաբրիկայում ամփոփվել են սոցիալիստական մրցության առաջին արդյունքները։ Ֆաբրիկայի աշխատողները օգոստոսին արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով տնտեսել են ավելի քան 50 հազար ռուբլի։ Միայն ձևարար ընկ. Պոլտորկինայի անձնական հաշվում գրանցված է 3.727 ռուբլու տնտեսում։ Ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել է մինչև տարվա վերջը արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով պետությանը օգուտ տալ 250 հազար ռուբլի։



Սովետական Հայաստանի աշխատավորները, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, արտադրական մեծ վերելք են ապրում։ Միահամուռ կերպով նրանք իրենց ստորագրություններն են դնում Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Դիմումի տակ։ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը մայրաքաղաքի առաջավոր գործարաններից մեկն է։ Նա քիչ պատվերներ չի կատարել կոմունիզմի մեծ կառուցումների համար։ Վերջերս նա Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարությանը ուղարկեց գեներատորների մի նոր պարտիա, որը պատրաստել էր տնտեսված նյութերի հաշվին։ Խաղաղության հերթափոխի օրերը աշխատանքի հիանալի հաջողություններով են նշանավորում գործարանի շատ բրիգադներ։ Վերջին ամիսներին օր չի եղել, որ գեներատորներ հավաքողները չգերակատարեն իրենց առաջադրանքը։

Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու օրը գործարանի առանձին ցեխերում պլանը կատարվեց 500 տոկոսով։ Խաղաղության հերթափոխի օրերին իր աշխատանքային հաջողություններով առանձնապես աչքի է ընկնում Ս. Զոբանյանի բրիգադը, որն

արտադրական առաջադրանքը սիստեմատիկորեն կատարում է 300—350 տոկոսով։ Օրերս բրիգադն իր հերթափոխային պլանը կատարեց 700 տոկոսով։ Ստորագրելով Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ, խառատ Գ. Զոբանյանը խոստացավ խաղաղության ստախանովյան հերթափոխի օրերին իր առաջադրանքը կատարել 350—400 տոկոսով։ Մոդելագործ Վ. Խմիրովը պարտավորություն ստանձնեց՝ արտադրանքի նոր տեսակների մոդելներ պատրաստելու տարեկան պլանը կատարել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի օրը։

Գործարանի կոլեկտիվը որոշեց խաղաղության հերթափոխի կանգնել և պարտավորվեց՝ գեներատորների թողարկման տարեկան արտադրական պլանը կատարել մինչև նոյեմբերի 7-ը, իսկ էլեկտրամոտորների թողարկման պլանը՝ մինչև դեկտեմբերի 5-ը։

Երևան կայարանի շոգեքարշային դեպոյի մեքենավարները, հնոցապանները, փականագործները, բանվորներն ու ծառայողները, ստորագրելով Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, պարտավորվեցին իրենց ավանդը մուծել խաղաղության



պաշտպանության գործում։ Երևանի շոգեքարշայինները հանդես եկան, որպես խաղաղության պաշտպանության անվան շոգեքարշային շարասյուներ կազմակերպելու գործի նախաձեռնողներ։ Շոգեքարշային շարասյան մեջ ներկայումս ընդգրկված է 28 լավագույն բրիգադ։ Այդ բրիգադները պարտավորվել են վառելանյութը խնայողաբար ծախսելու և առանձին դետալների օգտագործման ժամկետները երկարացնելու միջոցով տնտեսել 120 հազար ռուբլի։

Խաղաղության հերթափոխի օրերին արտադրական զգալի հաջողություններ է ձեռք բերել Երևանի փոքր հիդրոտուրբինների գործարանի կոլեկտիվը։ Առանձնապես մեծ հաջողությունների է հասել ձուլարանի ցեխի կոլեկտիվը։ Այս տարվա 8 ամսում, անցյալ տարվա համեմատությամբ, կոլեկտիվը կիսով չափ կրճատել է խոտանի տոկոսը։ Տնտեսվել է 75 տոննա չուգունի ձուլվածք։ Օրավուր բարձրացնում են իրենց արտադրանքը մեխանիկական-հավաքման ցեխի բանվորները։ Խառատ Գ. Գրիգորյանը պարտավորվել է սահմանված ժամկետից 3 օր շուտ ավարտել նոր յուրացվող հիդրոտուրբինի կորպուսի մշակումը։

Ստորագրությունների հավաքումը մեծ

խանդավառությամբ է ընթանում Լենինակա-
նի, Արթիկի, Կիրովականի և այլ քաղաքնե-
րի ձեռնարկություններում, ռեսպուբլիկայի
կոլտնտեսություններում, ՄՏԿ-ներում, սով-
խոզներում, հիմնարկներում: Դիմումի տակ
ստորագրություններ հավաքելու օրերին կոլ-
տնտեսականներն աշխատում են կրկնա-
պատկված եռանդով: Հոկտեմբերյանի շրր-
ջանի Լենինի անվան կոլտնտեսության օղա-
կավարուհի, կոմերիտուհի Լուսիկ Կանդո-
յանն օրական հավաքում է 170 կիլոգրամ
բամբակ՝ նորմայով նախատեսված 70-ի
փոխարեն: Նրա հավաքած ամբողջ բամբակը
բարձր տեսակի է: Նրանից հետ չեն մնում
Արփիկ Ղազարյանը, որն օրական հավա-
քում է 160—170 կիլոգրամ, Սեդա Մկրտչյա-
նը և շատ ուրիշներ: Կոլտնտեսությունում
չկա մի չանաքավոր, որ չգերակատարի օր-
վա նորման:

Կոտայքի շրջանի Նըռովան գյուղի կոլ-
տնտեսականների ժողովում օղակավարուհի
Ա. Ասլանյանն իր օղակի անունից պարտա-
վորվեց այս տարի յուրաքանչյուր հեկտարից
ստանալ 30 ցենտներ ծխախոտ՝ անցյալ
տարվա 20 ցենտների փոխարեն:

Այն ժամանակ, երբ կապիտալիստական
աշխարհը կատաղի կերպով դիմում է սպա-



ռազինության մրցավազքի, օրեցօր վատաց-
նելով իր երկրների ժողովուրդների դրու-
թյունը, սոցիալիզմի ու դեմոկրատիայի լա-
գերում՝ Սովետական Միությունում և ժո-
ղովրդական դեմոկրատիայի երկրներում
բարձրանում է աշխատավորների արտա-
դրական ու քաղաքական ակտիվությունը,
ավելի ու ավելի են բազմապատկվում հա-
ջողությունները՝ ժողովրդական տնտեսու-
թյան բոլոր ճյուղերում:

Մեր լայնածավալ Հայրենիքի բոլոր ծայ-
րերից ամեն օր ռապորտներ են ուղարկվում
ընկեր Ստալինին պետական պլանները
ժամկետից շուտ կատարելու մասին:

Այդ ռապորտներում դրսևորվում են սո-
վետական ժողովուրդների տնտեսական
հաջողությունները, արտադրական խանդա-
վառությունը, քաղաքական ակտիվությունը:
Միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկանե-
րից, մարզերից ու երկրամասերից ամեն օր
հաղորդումներ են լինում այն մեծ խան-
դավառության մասին, որով սովետական
մարդիկ ստորագրում են Խաղաղության
Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ
ու աշխատում հանուն խաղաղության:

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

# ԻՆՉ ՊԱՏՄԵՑԻՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

Սեպտեմբերի 22-ին, ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան ռայկոմում տեղի ունեցավ ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների ագիտատորների խորհրդակցություն՝ նվիրված արտադրության բարձրացման օգտին տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավագույն փործի փոխանակման հարցերին:

Ստորև տպագրում ենք խորհրդակցությունում ելույթ ունեցած մի քանի ագիտատորների խոսքը:

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՕԳՆԵՑ ՅՈՒՐԱՑՆԵԼՈՒ ՆՈՐ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՆ

Ռ. ՍԱՐԴԱՐՅԱՆ

Ավտոդողերի գործարանի նախապատրաստական ցեխի ագիտատոր

*Մի քանի ամիս առաջ, մեր գործարանն ավտոդողեր արտադրելու համար սկսեց գործածել ավելի էժան հումք։ Գործարանի պարտկոմը կազմակերպության ագիտկոլեկտիվի առաջ խնդիր դրեց՝ յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու պարզաբանել այդ*



*գործի խոշոր նշանակությունը, օգնել նրանց՝ հաղթահարելու դժվարությունները նոր տեխնոլոգիային տիրապետելու գործում։*

*Քանի որ այսօրվա մեր խորհրդակցությունը նվիրված է արտադրության բարձրացման համար տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավագույն փորձի փոխանակման հարցին, ես կպատմեմ թե ինչպես կատարեցի պարտկազմակերպության այդ առաջադրանքը։*

*Արտադրության նոր տեխնոլոգիային անցնելու հարցին նվիրված առաջին զրույցի ժամանակ ես խոսեցի նրա ունեցած ժողովրդա-տնտեսական խոշոր նշանակության մասին, կոնկրետ օրինակներով ցույց տվի, թե ինչ չափով կիջնի մեր արտադրանքի ինքնարժեքը, ինչ կտա այդ մեր երկրին։*

*Դրանից հետո խոսեցի այն դժվարությունների մասին, որոնց կհանդիպի գործարանի կոլեկտիվը, և, մասնավորապես, մեր՝ նախապատրաստական ցեխը, նշելով, որ ինչպիսին էլ լինեն այդ դժվարությունները, մենք բոլոր հնարավորություններն ունենք դրանք հաղթահարելու համար։ Ասածս ապացուցելու համար ես օրինակներ բերի այդ հումքով աշխատող Միության այլ գործարաններից։*

Բանվորները մեծ հետաքրքրությամբ լսե-
ցին զրույցը և խնդրեցին ծանոթացնել ար-
տադրության նոր տեխնոլոգիայի հետ։ Ես
ընդհանուր գծերով պատմեցի այդ մասին և
ասի, որ նոր տեխնոլոգիան նրանք ման-
րամասն կուսումնասիրեն հատուկ դասըն-
թացներում։

Երբ սկսեցինք նոր տեխնոլոգիայով աշ-
խատել, ես ագիտացիոն պարապմունք-
ները դարձրի ամենօրյա։ Բանվորնե-
րը բազմաթիվ հարցեր էին տալիս,
նոր առաջարկություններ մտցնում։ Ես տես-
նում էի, թե ինչպես յուրաքանչյուրը ձգտում
է որքան կարելի է շուտ տիրապետել նոր
տեխնոլոգիային, որքան կարելի է լավ աշ-
խատել։ Այս բոլորը հետևանք էր այն բանի,
որ յուրաքանչյուր բանվորի ու բանվորու-
հու համար պարզ էր նոր միջոցառման տըն-
տեսական ու քաղաքական նշանակությունը։

Ինչ խոսք, որ դժվարությունները շատ
էին։ Ես, որպես ցեխի վարիչ, ամենադժվար
օպերացիաներում նշանակում էի կոմու-
նիստներին, առաջավոր բանվորներին, նր-
րանց առաջ խնդիր դնելով՝ ցույց տալ, որ
այդ օպերացիան նույնպես կարելի է կատա-
րել բարձր որակով և սահմանված ժամկե-
տին։ Այսպես վարվելով, միշտ հաջողու-



թյան էի հասնում։ Մյուս բանվորները,
նայելով առաջավորների աշխատանքին, ի-
րենք էլ էին ոգեշնչվում, սովորում նրան-
ցից։

Շատ չանցած, ամբողջ գործարանի հետ
միասին, մեր ցեխը նույնպես տիրապետեց
արտադրության նոր տեխնոլոգիային և
այժմ հաջողությամբ կատարում է իր առա-
ջադրանքները։ Մենք, իհարկե, դեռ չենք
հաղթահարել բոլոր դժվարությունները և ես
ոչ մի օր չեմ թուլացնում նոր տեխնոլո-
գիային տիրապետելու համար տարվող
ագիտացիան։

Ես ուզում եմ մի օրինակով ցույց տալ,
թե ինչպես կարելի է խաղաղության պահ-
պանման օգտին տարվող ագիտացիան
կապել արտադրության կոնկրետ հարցերի
հետ։

Մի քանի օր առաջ մեր գործարանի բո-
լոր աշխատողները միահամուռ կերպով ի-
րենց ստորագրությունները դրեցին խաղա-
ղության կողմնակիցների Համաշխարհային
Խորհրդի Դիմումի տակ։ Սկսվեց արտադրա-
կան նոր վերելք, բայց ցեխի աշխատող Մ.
Մարտիրոսյանը պատրաստեց ոչ որակյալ
խառնուրդ։ Ես այդ եզակի դեպքն օգտագործե-
ցի և ագիտացիոն զրույցի ժամանակ պար-

վաբանեցի, որ Խաղաղության Պակտ կնքե-
լու Դիմումի տակ մեր ստորագրությունները
դնելուց հետո բոլորս, առանց բացառության,
պետք է ամրապնդենք խաղաղությունը ավե-
լի լավ աշխատանքով, պլանների գերակա-
տարումով և բարձրորակ արտադրանք տա-
լով։ Մարտիրոսյանը խոստացավ, որ իր կող-
մից նման դեպք այլևս չի կրկնվի։ Նրա աշ-
խատանքը ցույց է տալիս, որ պահ-
պանում է իր խոսքը։ Այդ զրույցից հետո
արտադրանքի որակի բարձրացման համար
ավելի ուշադիր սկսեցին աշխատել նաև ցե-
խի մյուս բանվորները։

## ԻՆՉՊԵՍ ԵՄ ՕԳՆՈՒՄ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒ-ԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԳՈՐԾԻՆ

*Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*
«Ավտոդետալ» գործարանի № 4 տեղամասի
ագիտատոր

Ես ուզում եմ խոսել այն մասին, թե ինչ-
պես մենք, ագիտատորներս, ակտիվ կեր-
պով միջամտելով արտադրության հարցե-
րին, կարող ենք մեծ օգնություն ցույց տալ
բանվորներին արտադրողականության բարձ-
րացման գործում։ Կխոսեմ իմ իսկ աշխա-
տանքի մասին։

Մինչև այս տարվա հունիս ամիսը մե-



խանիկական ցեխի մեր տեղամասը հա-
մարվում էր հետամնաց. ճիշտ է, տեղա-
մասն իր պլանները կատարում էր, բայց
մյուս տեղամասերից շատ հետ էինք մնում։
Քննության առնելով տեղամասի հարցը,
գործարանի պարտիական կազմակերպու-
թյունը նշեց, որ նրա հետ մնալու պատճա-
ռը աշխատանքային ցածր կարգապահու-
թյունն է, արտադրանքի ոչ ճիշտ հաշվա-
ռումը, բանվորների մեջ տարվող ագիտա-
ցիոն-մասսայական աշխատանքի վատ
կազմակերպումը։ Ինձ, որպես տեղամասի
ագիտատորի, ցուցում տրվեց, թե ինչից
սկսել, ինչպես օգնել տեղամասի կոլեկտի-
վին՝ վերացնելու թերությունները։

Ես սկսեցի աշխատանքային կարգապահու-
թյան բարձրացման հարցից։ Ավելի մոտի-
կից ուսումնասիրելով աշխատանքային ցա-
ծրր կարգապահության պատճառները, ես
նկատեցի, որ մեր տեղամասի բանվորները,
որոնք բոլորն էլ երիտասարդներ են, լրիվ
չեն օգտագործում իրենց աշխատանքային
ժամերը այն պատճառով, որ վատ է դրված
արտադրանքի հաշվառման գործը։ Ամսվա
վերջում ոչ մի աշխատողի համար պարզ չէր
լինում, թե ինքն իրոք ինչքան արտադրանք
է տվել։

Իմ միջամտությամբ դիրեկցիան մշակեց յուրաքանչյուր բանվորի օրական արտադրանքի հաշվառման ձև։ Այդ ձևի շնորհիվ յուրաքանչյուր բանվորի համար պարզ դարձավ նրա օրական, ինչպես նաև ամսական արտադրանքը և վաստակած աշխատավարձի չափը։

Բացի այդ, հնարավորություն ստեղծվեց հրապարակել յուրաքանչյուր բանվորի աշխատանքային ցուցանիշները։ Ես արդեն խոսում էի ոչ թե վերոույցների ժամանակ խոսում էի ոչ թե վիճակագրորեն, այլ ամեն մի բանվորի աշխատանքի մասին կոնկրետ օրինակներ բերելով։

Այս միջոցառումը զգալի կերպով բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը։ Յուրաքանչյուր բանվոր ձգտում էր որքան կարելի է լրիվ օգտագործել աշխատանքային ժամերը և ավելի շատ արտադրանք տալ։ Ամբողջ տեղամասի արտադրողականությունը բարձրացավ 20—25 տոկոսով։

Ես միշտ իմ զրույցների ժամանակ խոսում էի, որ արտադրողականության բարձրացման համար մեծ նշանակություն ունի այն հանգամանքը, թե բանվորն ինքը ինչպես է կազմակերպում իր աշխատանքը, ինչպես է ռացիոնալ կերպով օգտագործում յուրաքանչյուր րոպեն ու վայրկյանը։ Տեսնելով, թե ինչպես տեղամասի բանվորներն իրենք այդպիսի բուռն ձգտում էին ցուցաբերում ավելի լավ աշխատել, որոշեցի օգնել նրանց անձնական օրինակով։ Ես օրական պատրաստում էի 150 դետալ։ Հետևելով առաջավոր ստախանովականների օրինակին, սկսեցի փորձեր կատարել՝ խնայելու համար ժամանակը։ Հաշվեցի, որ 150 դետալ մշակելու համար ես մոտ 600 անգամ վերցնում, դազգահին եմ ամրացնում և նորից հանում դետալները։ Ուրեմն՝ յուրաքանչյուր անգամ նույնիսկ 1—2 վայրկյան խնայելն էլ մեծ արդյունքի կարող է հասցնել։

Մի շարք փորձեր կատարելուց հետո կարողացա գտնել դետալները դազգահի մոտ դասավորելու, դազգահին ամրացնելու և հանելու ամենանպատակահարմար ձևերը, վարժվեցի որքան կարելի է շարժումները կատարել ճշգրիտ և արագ։ Այսպես աշխատելու հենց առաջին ամսին զգալի հաջողությունների հասա, իսկ ահա երրորդ ամիսն է, որ օրական մշակում եմ 200—210 դետալ։

Իմ առաջին հաջողությունների մասին ես պատմեցի տեղամասի բանվորներին և հենց դազգահիս մոտ էլ ցույց տվեցի, թե ինչպես

եմ աշխատում։ Զրույցի վերջում ունկնդիրներին հանձնարարեցի մտածել իրենց աշխատանքը վերակառուցելու մասին։ Ինքս սկսեցի յուրաքանչյուրին օգնել այդ գործում։ Այսպիսով ես հասա այն բանին, որ տեղամասի համարյա բոլոր բանվորներն իրենց համար ստեղծեցին աշխատանքի նոր, որոշակի ռեժիմ։

Այս ամենի արդյունքը եղավ այն, որ տեղամասի արտադրողականությունը բարձրացավ 40—45 տոկոսով և օգոստոս ամսին մեր տեղամասը նվաճեց գործարանի միջցեխային փոխանցիկ Կարմիր դրոշը։

## ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԶՐՈՒՅՑ ԻՐ ՆՊԱՏԱԿԸ ՊԵՏՔ Է ՈՒՆԵՆԱ

### Հ. ԹԵԼՈՒՄՅԱՆ

Կիրովի անվան գործարանի 1—11 ցեխի ագիտատոր

Իմ անցկացրած մեկ զրույցի օրինակով ես ուզում եմ ցույց տալ, թե ինչպես եմ պլանավորում արտադրության հարցերին վերաբերող զրույցները, ինչպես եմ ձգտում իմ առաջ դրված նպատակին հասնելուն։

Այդ զրույցի թեման ես ընտրել էի արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցը մեր



ցեխում։ Զրույցին նախապատրաստվեցի ինքնարժեքի հարցը բազմակողմանիորեն ուսումնասիրելով։ Նյութեր հավաքեցի Մոսկվայի «Ֆոսրեխստնիկ» ֆաբրիկայի նորարարների աշխատանքի վերաբերյալ, ինչպես նաև այն մասին, թե ինչ հաջողությունների են հասել մեր իսկ գործարանի ու ցեխի առաջավոր բանվորները՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում։

Զրույցի սկզբում ես նախ բացատրեցի, թե գործարանի, ամբողջ երկրի համար ինչ նշանակություն ունի ինքնարժեքի իջեցումը, ինչ էլեմենտներից է կազմված այն։ Ապա անցա մեր ցեխում արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցին՝ պարզաբանելով, որ մենք ինքնարժեքը կիջեցնենք, եթե խնայողաբար, ռացիոնալ կերպով օգտագործենք էլեկտրական էներգիան, գոլորշին, ջուրը, եթե ճշգրիտ կերպով պահպանենք տեխնոլոգիական բոլոր պրոցեսները, եթե չտանք ցածրորակ արտադրանք։

Ցուցադրելու համար, թե ինչպես կարելի է հասնել այդ ամենին, ես խոսք տվեցի ցեխի լավագույն բանվոր Մ. Կարապետյանին՝ պատմելու իր աշխատանքի փորձի մասին։

Կարապետյանից հետո խոսելու ցանկություն հայտնեցին նաև ստախանովական

բանվորներ Ա. Մարտիրոսյանը, Ս. Բալաճյանը և Բ. Նավասարդյանը, որոնք նույնպես մի շարք ուսանելի բաներ պատմեցին։

Զրույցի վերջում ես ունկնդիրներին հայտարարեցի, որ հաջորդ անգամ նույնպես խոսելու ենք ինքնարժեքի իջեցման հարցի շուրջը. թող յուրաքանչյուրը պատրաստվի պատմելու իր հաջողությունների մասին, անի իր առաջարկությունները։

Մինչև հաջորդ զրույցը ես խոսեցի այն բանվորների հետ, որոնք օգնության կարիք էին զգում, նորից պատմեցի, թե ինչպես են աշխատում առաջավոր բանվորները։ Հաջորդ զրույցը անցավ շատ աշխույժ, ելույթներ ունեցան նոր մարդիկ, պատմելով իրենց առաջին հաջողությունների մասին։

Անընդհատ ուշադրության կենտրոնում պահելով իմ առաջ քաշած հարցը, ագիտացիայի միջոցով կարողացա նպաստել ինքնարժեքի իջեցման գործին։ Մեր ցեխը տեխնոլոգիական ռեժիմի ճշգրիտ պահպանման, էլեկտրական էներգիայի, գոլորշու, ջրի ռացիոնալ օգտագործման շնորհիվ այժմ տալիս է միայն բարձրորակ արտադրանք և զգալի չափով իջեցրել է ինքնարժեքը։

---

# ԻՆՉՊԵՍ ԵՄ ՕԳՏՎՈՒՄ ԹԵՐԹԵՐԻՑ

Ագիտացիոն զրույցներս ունկնդրում են իմ ղեկավարած կոմպլեկտի ջուլհակ-ջուլհակուհիները։ Ես նրանց պատմում եմ մեր մեծ Հայրենիքում տեղի ունեցող կոմունիստական շինարարության մասին, բազմաթիվ օրինակներով վեր հանում բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության ազգային քաղաքականությունը, խաղաղության համար մղվող սովետական ժողովրդի մեծ պայքարը։

Ագիտացիոն զրույցների համար լավ ու հետաքրքիր նյութեր գտնում եմ մամուլում։ Մեր թերթերը անսպառ նյութ են տալիս՝ միջազգային կարևոր հարցերի մասին, կոմունիզմ կառուցող հերոսական սովետական ժողովրդի աշխատանքային խանդավառության մասին։

Վերջերս, հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու մասին խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը մասսայականացնելիս, ես ունկնդիրներին նկարագրեցի, թե ինչպես կապիտալի

աշխարհում՝ իմպերիալիստական Ամերիկայում, Անգլիայում, Ֆրանսիայում և այլ երկրներում, աշխատավորությունը անլուր շահագործման է ենթարկվում, թե ինչպես հատկապես բանվոր դասակարգը ողորմելի, խղճուկ կյանք է վարում։ Ինձ մոտ կային թերթերից քաղված օրինակներ Անգլիայի և Ֆրանսիայի հանքերում աշխատող ածխահատների, Հնդկաստանի պլանտացիաներում աշխատող գյուղական բատրակների, ԱՄՆ-ի գետնախորշերում պատսպարված բանվորների մասին։ «Նովոյե վրեմյա» ժուռնալի սույն թվի № 28-ում տպագրված մի հոդվածի նյութերով ցույց տվի, որ այժմ Ամերիկայի Միացյալ Նահանգներում կա 25 միլիոն հիվանդ մարդ, որոնցից մոտ 20 միլիոնը բանվորներ են։ Այդ հոդվածում տրըված էր, որ «Անցյալ տարի ավելի քան մեկ միլիոն ամերիկացիներ մեռել են խրոնիկական հիվանդություններից... Բնակչության մեծ մասը հնարավորություն չունի վճարել բժշկական սպասարկման համար։ 75 միլիոն ամերիկացիներ զուրկ են բժշկական սպասարկումից»։

Որպես դրա հակադրություն՝ ես թերթերից օրինակներ բերեցի, թե ինչպես սովետական



բժշկությունը աշխարհում նվաճել է ամենաառաջնակարգ տեղը՝ բնակչության սպասարկման ուղղությամբ, թե ինչպես ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր բնակավայր բժշկական սպասարկում ունի, կլինիկական ու հիվանդանոցային բժշկությունը ձրի է, ամեն տարի միլիոնավոր աշխատավորներ պետության հաշվին և կամ արտոնյալ կարգով սանատորիական ու մասնագիտական բուժման են ենթարկվում։ «Սովետական Հայաստան» թերթից բերված տվյալներով ես ցույց տվի, թե ինչպես միայն Հայաստանում 1949—1950 թվականներին գյուղ է ուղարկվել 300 բժիշկ, պետությունը տասնյակ միլիոնավոր ռուբլիներ է հատկացնում հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ծննդատների, ամբուլատորիաների, կանանց և մանկան կոնսուլտացիաների պահպանման ու ընդարձակման համար։

Երբ վերջացրի զրույցս և ուզում էի իմանալ, թե ում ինչ հարց է հետաքրքրում, ունկնդիրներից ջուլհակ Գրիգորյանն ասաց.

— Հետաքրքիր կլինի, եթե ձեր հաջորդ զրույցում պատմեք տեքստիլ արդյունաբերության աշխատողների մասին, ինչպե՞ս են ապրում նրանք՝ մեր երկրում և կապիտալիստական աշխարհում։

Ես խոստացա բավարարել ունկնդիրի պահանջը։

Եվ ահա ես որոնում եմ նյութեր։ Առաջին հերթին թերթերի մեջ եմ որոնում։ «Տրուդ» թերթի էջերում գտա տեքստիլ արդյունաբերության աշխատողների պրոֆմիության Կենտկոմի նախագահ Ն. Մուրավյովայի հոդվածը։ Ընկ. Մուրավյովան պատմում է այն վիթխարի պետական հատկացումների մասին, որ մեր Հայրենիքում տրամադրվում են տեքստիլ արդյունաբերության աշխատողների կուլտուր-լուսավորական կարիքների բարելավման համար։ Սև ծովի ափին, Ղրիմում, Վոլգայի ափին, Մերձբալթիկայում և շատ այլ տեղերում տեքստիլ արդյունաբերության աշխատողների համար գործում են սանատորիաներ և հանգստի տներ։ Միության մեջ գործող բոլոր ֆաբրիկաներն ու կոմբինատներն ունեն իրենց ակումբներն ու կուլտուրայի այլ օջախները։ Տեքստիլ արդյունաբերության բոլոր աշխատողները ապրում են լուսավոր ու կուլտուրական բնակարաններում, ստանում են բարձր աշխատավարձ, երեխաները պետության հաշվին միջնակարգ դպրոցներում ստանում են ուսում։ Տեքստիլ արդյունաբերության պրոֆմիության յուրաքանչյուր 80 անդամից մեկը ՍՍՌՄ,



ռեսպուբլիկական, երկրամասային, մարզային, քաղաքային և ավանային Սովետների դեպուտատ է։ Շատերն ընդգրկված են այլ հասարակական աշխատանքներում և ինքնագործունեության խմբակներում։ Երիտասարդ բանվորների համար ամենուրեք կազմակերպված են գիշերային դպրոցներ, տեխնիկայի տիրապետման դպրոցներ և այլն։

Այս ես ուսումնասիրեցի Լենինականի Տեքստիլ կոմբինատում աշխատողների հանգստի, կենցաղի ու բնակարանային պայմանները և պարզեցի, որ միայն այս տարվա 9 ամսում կոմբինատը մեկ և կես միլիոն ռուբլի է ծախսել կոլեկտիվի անդամների կուլտուր-լուսավորական կարիքների բավարարման համար, որից շուրջ 500 հազար ռուբլին՝ կոլեկտիվի անդամների և նրանց երեխաների ամառային հանգստի կազմակերպման համար։ Կոլեկտիվից 274 մարդ այս տարի պետության հաշվին հանգստացել ու բուժվել են միութենական և ռեսպուբլիկական սանատորիաներում և հանգստյան տներում։ 1948 թվականից սկսած կոմբինատում գործում է գիշերային սանատորիա, որտեղ, առանց արտադրությունից կտրվելու, ամեն տարի հանգստանում և կազդուրվում են 360 աշխատողներ։ Այս տարի այդ սանա-

տորիայում արդեն հանգստացել են 330 մարդ։ Գիշերային սանատորիային կից գործում է նաև դիետիկ ճաշարան։ Կոմբինատի աշխատողների 850 երեխա հանգստացել են Կիրովականի հանգստյան տներում և պիոներական ճամբարներում։

Երբ ես մեր տեքստիլագործների կուլտուրական հանգստի, կենցաղի ու կյանքի վերաբերյալ անհրաժեշտ նյութեր էի հավաքել, իմ առջև կանգնեց ավելի բարդ հարց՝ իսկ որտեղի՞ց ճշմարտացի նյութեր գտնել կապիտալիստական աշխարհի տեքստիլ արդյունաբերության աշխատողների վերաբերյալ։ Կրկին դիմեցի թերթերի և ժուռնալների օգնությանը։

Փնտրելով, մամուլում կարդացի անգլիական պրոգրեսիվ գրող Ռեյ Ուոտկինսոնի հոդվածը՝ աշխարհի տեքստիլ արդյունաբերության մի շարք ֆաբրիկաների և հատկապես Անգլիայի տեքստիլ արդյունաբերության խոշորագույն կենտրոն Լանկաշիրի ֆաբրիկաների ջուլհակների կյանքի ողբերգական վիճակի մասին։ Հոդվածը նույնությամբ թարգմանված է անգլիական «Նյուս» («Նորություններ») թերթից։ Ուոտկինսոնի հոդվածում ես կարդում եմ. «Լանկաշիրը Անգլիայի տեքստիլ արդյունաբերության խոշորագույն կենտ-



րոններից մեկն է. Այնտեղ են տեղավորված գործվածքային և մանվածքային շատ ֆաբրիկաներ։ Բայց այդ ֆաբրիկաները նույն շրջանում են, որտեղ և ձուլարաններն են, հանքերը, ածխահորերը, կղմինդրի, ապակու ու մեքենաշինական գործարանները, երկաթուղու դեպոն, պահեստներ, ջրանցքներ։ Ահա ինչու այնտեղ, որտեղ տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններն են, երկինքը միշտ պատած է լինում ծխով, ամենուրեք մուր է իջնում ու շերտ-շերտ նստում ամեն ինչի վրա, ներառյալ մարդկանց թոքերին...»։

Ապա գրողը նկարագրում է այդ պայմաններում աշխատող մանող և ջուլհակ բանվորների կյանքը. «Անգլիայում ամենաաղքատն ու ամենաթշվառը մանող և ջուլհակ բանվորներն են... Ահա ինչու ջուլհակի ու մանողի կյանքի միջին տևողությունը... 30 տարի է։ Ջուլհակը 12, 14, 16 ժամ աշխատում է դազգահի վրա, նրա հետ աշխատում են նաև կինը և երեխաները, բայց և այնպես դարձյալ քաղցած են։ Ֆաբրիկանտները, որպեսզի դիմեն անհաշիվ հարստության, Լանկաշիրի Հարևան Կենտա, Սասսեկս և այլ գյուղերում գնում են երեխաներ, հատկապես ընկեցիկներ ու անապաստաններ, նրանց սովորեց-

նում ջուլհակի գործը և սարկական շահա-
գործման ենթարկում ցմահ։

Ես ուզում եմ նկարագրել այդպիսիներից մեկին, որը բախտի բերումով ապրել է երկար, բայց ահա ինչպես։

Ահա ջուլհակուհի Դիկկինսոնը... Նրան 12 տարեկան հասակում գնել են ֆաբրիկայում աշխատելու համար և ահա 50 տարի է, ինչ քարշ է տալիս իր գոյությունը ֆաբրիկայում... Նա այժմ վհուկից չի տարբերվում և շրջում է օրորվելով, ուրվականի պես, ու դեռևս աշխատում է, որովհետև հենց որ դադարեց աշխատելուց, կդադարի և դրոշներ ստանալուց ու քաղցից կմեռնի։ Ջուլհակուհի Դիկկինսոնը ողջ կյանքում օր ու արև չի տեսել։ Ինչքան քիչ է նա կուշտ եղել... Խորշոմներից բացի դեմքին ոչինչ չի երևում, աչքերը մեռած են ու հուսախաբ կյանքի դաժան հարվածներից, իսկ ձեռքերի ոսկորները միայն դորշ ու կոշտացած կաշվով են պատած, որի տակից լայնացած երակները կապտին են տալիս...»։

Գրողը շրջել է շատ երկրներ և ակնարկ է անում նաև ճապոնական տեքստիլ արդյունաբերության մասին ու ավելացնում. «Քառակի անգամ թշվառ է ապրում ամերիկյան դարշապարի տակ հեծող ճապոնիայի տեքս-



տիլ արդյունաբերության մեջ աշխատող բանվորը»։

Կապիտալիստական մյուս երկրներում նույնպես տեքստիլ արդյունաբերության մեջ աշխատող բանվորները՝ երիտասարդ տղաներն ու աղջիկները ենթարկվում են դաժան շահագործման։ «Նրանց աշխատավարձը կիսով չափ ցածր է այլ ճյուղերում աշխատողների աշխատավարձից։ Իսկ կանանց աշխատավարձը դրանից էլ զգալիորեն ցածր է, թեև նրանք շատ հաճախ կատարում են տղամարդու աշխատանք։

Առանձնապես ծանր է գաղութային երկրների տեքստիլագործների կյանքը։ Հնդկաստանում, օրինակ, ջուլհակուհու օրվա աշխատավարձով հազիվ հնարավոր է լինում գնել մեկ բաժակ բրինձ...»։

Գրողն այնուհետև մեջ է բերում Իտալիայի Ռո քաղաքի «Վոնեկկի» բամբակեղենի ֆաբրիկայի մի բանվորի նամակ, որի հեղինակը պատմում է այն անմարդկային շահագործման մասին, որին ենթարկվում են իրենք, այն աշխատանքային ծանր պայմանների և խղճուկ կենցաղի մասին, որի մեջ են իրենք՝ «Վոնեկկի» ֆաբրիկայի բանվորները։

«Մենք նստում ենք ինչպես աղբանոցում, — գրում է նամակի հեղինակ-բանվորը, —

այս ու այն կողմից մեզ վրա է ցայտում ջուրը։ Երբ եղանակը անձրևային է լինում, դրան խառնվում է խարխուլ տանիքից ցած թափվող անձրևաջուրը և մենք «լողանում» ենք հորդ ու կեղտոտ ջրերի տակ։ Խիտ ամպագոլորշին թույլ չի տալիս անգամ տեսնելու այն, ինչ հազիվ մեկ մետրի վրա է։

Այսպես է դրությունը Ռո քաղաքի բամբակեղենի բոլոր ֆաբրիկաներում։ Ահա ինչու բժիշկը հայտարարում է, որ քաղաքի բամբակեղենի արդյունաբերության ձեռնարկություններում աշխատող բոլոր բանվորների մոտ 50 տոկոսը հիվանդ են տուբերկուլյոզով»։

«Կապիտալիստական աշխարհում ճգնաժամերը ամենից կործանարար անդրադառնում են տեքստիլ արդյունաբերության աշխատողների վրա,— վերջացնում է գրողը։ Գործազուրկների 40 տոկոսը տեքստիլագործներ են։ Մեծ տոկոս են կազմում նաև Ֆրանսիայի, Իտալիայի, Բելգիայի և այլ երկրների գործազուրկ-տեքստիլագործները։ Տեքստիլ արդյունաբերության այնպիսի կենտրոնում, ինչպիսին ֆրանսիական Լիլ քաղաքն է, բամբակեղենի ֆաբրիկաների 90 տոկոսը չեն գործում և նրանց բանվորները փողոց են շպրտվել... Մինչ պատերազմը այստեղ տե-



քստիլ արդյունաբերության մեջ աշխատում էին 150 հազար բանվոր, այժմ՝ 20 հազար... Մարշալի պլանով ամերիկյան «օգնության» ինչպիսի՜ պտուղներ...

Բամբակեղենի ֆաբրիկաները մեկը մյուսի հետևից կանգ են առնում Իտալիայում, որովհետև ամերիկյան շուկայական լաթը դուրս է մղել իտալական ֆաբրիկաների արտադրանքը։ Եվ աճում է գործազրկությունը, աճում ահավոր չափով, աշխատավորությանը նետում թշվառության և սովի ճիրանները»։

Այսպես. նյութեր ունեմ։ Անց եմ կացնում պարապմունքը, ցույց տալով երկու աշխարհի, երկու սիստեմի տարբերությունը։ Իմ ունկնդիրների մեջ կան բանվորներ, որոնք աշխատել են մինչև Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելը։ Նրանք խոսք են վերցնում և պատմում այդ ժամանակվա իրենց կյանքի մասին, որն այնպիսին էր, ինչպես այժմ կապիտալի աշխարհի տեքստիլագործների կոշմարային կյանքը։ Նրանք իրենց ելույթներում հայտարարում են, որ հարազատ բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության հոգատարությանը պատասխանում են արտադրական բարձր ցուցանիշներով, որ իրենք օրվա առաջադրանքը կատարում են 135—140 տոկո-

սով Նրանք օրինական հպարտությամբ նշում են, որ մեր կոմբինատը 8 ամսում հարազատ Հայրենիքին պլանից ավելի է տվել 72 հազար մետր կտավ և մինչև տարվա վերջը պլանից ավել կարտադրի ևս 50 հազար մետր։

Սովետական ջուլհակները,— ամփոփելով գրույցը ասում եմ,— առաջավոր մարդիկ են, մեր հարազատ տերության հզորության համար մարտնչող հայրենասերներ, սովետական ջուլհակները կոմունիզմ կառուցող մարդկանց ավանգարդումն են և ամեն ինչ անում են ստալինյան խաղաղասիրական քաղաքականության անշեղ կենսագործման համար։ Նրանք ջանք չեն խնայում բազմապատկելու մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունը։

Հ. ԴԱՎԹՅԱՆ

Լենինականի Տեքստիլ կոմբինատի
գործվածքային ֆաբրիկայի ագիտատոր

---

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Լրացավ երկու տարին այն օրից, երբ չին ժողովուրդը համաշխարհային-պատմական հաղթանակ տարավ չինական ֆեոդալների և ամերիկյան իմպերիալիստների միացյալ ուժերի դեմ։ 1949 թվականի հոկտեմբերի 1-ին Պեկինում հռչակվեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծումը։ Նոր, պայծառ էջ բացվեց չինական 475 միլիոնանոց մեծ ժողովրդի կյանքում։

Դարեր շարունակ չին ժողովուրդը հեծում էր ֆեոդալական ճնշողների լծի տակ. ավելի քան հարյուր տարի Չինաստանում տեր ու տնօրեն էին հանդիսանում օտարերկրյա իմպերիալիստները։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ առաջացած Չինաստանի կոմունիստական պարտիան չին ժողովրդին ոգեշնչեց և կազմակերպեց հերոսական պայքար մղելու իր ազատության ու անկախության համար։ Չին ժողովրդի պանծալի հաղթանակն

այդ պայքարում հնարավոր դարձավ շնորհիվ այն բանի, որ Սովետական Բանակը ջախջախեց հիտլերյան Գերմանիային և իմպերիալիստական Ճապոնիային։ Հենվելով խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերի աջակցության վրա, չին ժողովուրդը տապալեց Չան Կայ-շիի ծախու կլիկի և ամերիկյան իմպերիալիստների ճընշումը։

Գնահատելով չին ժողովրդի մեծ հաղթանակի նշանակությունը, Վ. Մ. Մոլոտովն ասաց, որ «Մեր երկրում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Չինաստանում ժողովրդա-ազատագրական շարժման տարած հաղթանակը մի նոր ուժեղագույն հարված է համաշխարհային իմպերիալիզմի ամբողջ սիստեմին և իմպերիալիստական ագրեսիայի բոլոր պլաններին՝ մեր ժամանակներում»։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակումը նշանավորեց չին ժողովրդի կյանքում կատարված մեծագույն ռևոլյուցիոն հեղաշրջումը։ Մասնահատված կիսագաղութային երկրից Չինաստանը դարձավ միասնական, իսկապես անկախ պետություն։ Առաջին անգամ իր երկրի տեր ու տնօրենը դարձած չին ժողովրդի առջև բացվել են



ազատ, խաղաղ, ստեղծարար աշխատանքի և բարգավաճման ուղիներ։

Ժողովրդական ռեսպուբլիկայի գոյության երկու տարվա ընթացքում Չինաստանում կատարվել են դեմոկրատական խոշոր վերափոխումներ։ Կարևորագույն բարեփոխություններից մեկն է հողային ռեֆորմը, որը միլիոնավոր հողազուրկ և սակավահող գյուղացիների ազատեց կալվածատերերի շահագործումից։ Կոմունիստական պարտիան և ժողովրդական իշխանությունը իրականացնում են չին գյուղացիների դարավոր իղձը՝ կալվածատիրական հողերը իրենց հանձնելու մասին։ Հողային ռեֆորմը ներկայումս չինական 400 միլիոն գյուղական բնակչությունից ընդգրկել է 290 միլիոն մարդ։ Տասնյակ միլիոնավոր չքավորներ, հողից բացի, ստացել են նաև հացահատիկ, տուն, բանող անասուններ և գյուղատնտեսական ինվենտար։

Այն շրջաններում, որտեղ հողային ռեֆորմ դեռ չի անցկացվել, իջեցվել է հողի վարձակալական վճարը։ Այդ շրջանների գյուղացիները պատրաստվում են կալվածատիրական հողերի բաժանմանը՝ այս աշնանը և ձմռանը։ 1952 թվականին հողային ռեֆորմը կավարտվի ամբողջ երկրում, բացառությամբ

այն շրջանների, որոնք բնակեցված են գըլ-
խավորապես ազգային փոքրամասնություն-
ներով:

Միաժամանակ անց են կացվում դեմոկ-
րատական այլ խոշոր վերափոխություններ,
որոնք ուղղված են ժողովրդի խաղաղ ու եր-
ջանիկ կյանքի ապահովմանը: Պետության
ձեռքում են գտնվում երկաթուղիները, փոս-
տըն ու հեռագրատունը, խոշորագույն բան-
կերը, ինչպես նաև ֆաբրիկաները, գործա-
րանները, հանքերը և մյուս ձեռնարկու-
թյունները, որոնք անցյալում պատկանում
էին ճապոնական իմպերիալիստներին և Չի-
նաստանի խոշոր մոնոպոլիստական բուր-
ժուազիային: Ժողովրդական իշխանությունը՝
իր ձեռքին ունենալով տնտեսական հրամա-
նատարական դիրքերը, օժտված է երկրի
ժողովրդական տնտեսության զարգացմանն
ուղղություն տալու և այն կարգավորելու
հնարավորություններով: Ռեսպուբլիկայի է-
կոնոմիկայում անշեղորեն աճում և ամ-
րապնդվում է պետական սեկտորը:

Դեմոկրատական վերափոխումների շնոր-
հիվ և իմպերիալիստական ագրեսիայի դեմ
մղվող պայքարում է՛լ ավելի ամրապնդվում
և զարգանում է Չինաստանի ժողովրդա-դե-
մոկրատական կարգը: Բնակչության բոլոր



խավերը և բոլոր ազգությունները օրըստօրե
ավելի սերտորեն են համախմբվում կոմու-
նիստական պարտիայի և Կենտրոնական ժո-
ղովրդական կառավարության շուրջը: Դա
արդյունք է այն բանի, որ Չինաստանի կո-
մունիստական պարտիան հետևողականորեն
անց է կացնում միասնական ժողովրդական
դեմոկրատական ճակատի և մասսաների
հետ իր ամենասերտ կապի քաղաքականու-
թյունը: Բանվոր դասակարգը, լինելով Չի-
նաստանի ժողովրդա-դեմոկրատական կար-
գի ղեկավար ուժը, ապահովում է երկրի
զարգացումը՝ սոցիալիզմի ուղիով:

Համաշխարհային տիրապետության ձըգ-
տող ամերիկյան իմպերիալիստները դիմում
են ամեն տեսակ միջոցների, որպեսզի վի-
ժեցնեն Չինաստանում կատարվող դեմոկ-
րատական վերափոխումները, խանգարեն
չին ժողովրդի խաղաղ աշխատանքը: ԱՄՆ-ի
իմպերիալիստները ագրեսիայի պատրաս-
տությունից անցել են ագրեսիայի ուղղակի
ակտերի: 1950 թվականին նրանք արյունա-
ուշտ կերպով ներխուժեցին Կորեա և գրավ-
եցին չինական Տայվան կղզին: Ամերիկ-
յան օդային ավազակները պրովոկացիոն
թռիչքներ են կատարում չինական տերիտո-
րիայի վրա: Գեներալ Մակարթուրի հոր-

դաները փորձում էին ներխուժել Չինաստանի սահմանները։ Չինական ժողովուրդը եղբայրական օգնության հասավ կորեական ժողովրդին, Կորեա ուղարկելով ժողովրդական կամավորների ջոկատներ։

Այս տարի չին ժողովուրդը խափանեց իմպերիալիստների խարդախ ինտրիգները, որոնք փորձում էին Չինաստանից անջատել Տիբեթը։ Կենտրոնական ժողովրդական կառավարության իմաստուն քաղաքականության շնորհիվ իրագործվեց Տիբեթի ժողովրդի խաղաղ ազատագրումը իմպերիալիստական կապանքներից և նրա վերամիավորումը Չինաստանի ժողովուրդների մեծ ընտանիքի մեջ։ Այսպիսով, ներկայումս ազատագրված է ամբողջ երկիրը, բացառությամբ Տայվան կղզու, որը դեռևս գտնվում է ամերիկյան զավթիչների ձեռքում։

Ժողովրդական ռեսպուբլիկայի գոյության երկու տարիները եղել են ժողովրդական տնտեսության արագ վերականգնման և զարգացման համար կատարված ստեղծագործական համառ աշխատանքի տարիներ։ Ժողովրդական կառավարությունը վերջ դրեց ինֆլյացիային (փողի արժեքազրկմանը), որ ամբողջ 12 տարի մոլեգնում էր Չինաստանում։ Հաջողությամբ հաղթահարված են արտ-



դյունաբերության, տրանսպորտի և առևտրի բնագավառում եղած փլուզումն ու քաոսը՝ գոմինդանականների, ճապոնական և ամերիկյան օկուպանտների հանցավոր տնօրինության այդ ծանր հետևանքները։

Ժողովրդական կառավարությունն իր գործունեության առաջին երկու տարում ազգային էկոնոմիկայի մեջ արդեն զգալիորեն ավելի շատ միջոցներ է ներդրել, քան ներդրնում էին հին, ռեակցիոն իշխանությունները։

Հաջողությամբ վերականգնվում և զարգանում է չինական արդյունաբերությունը։ Բարձրանում են նոր գործարանների կորպուսները։ Հատուկ ուշադրություն է դարձվում ծանր ինդուստրիայի զարգացմանը, 1950 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մեքենաների արտադրությունն ավելացավ երեք անգամ, չուգունի արտադրությունն՝ ավելի քան 11 անգամ, պողպատինը՝ համարյա 8 անգամ, ցեմենտինը՝ 3,8 անգամ։

Արդյունաբերությունը նոր լուրջ հաջողությունների է հասել այս տարի։ Երկրի հյուսիս-արևելքում, որտեղ կենտրոնացված է Չինաստանի ծանր արդյունաբերության հիմնական բազան, այս տարվա առաջին

հնգամյակում մոտ 33 տոկոսով շատ արդյունաբերական ապրանք է թողարկվել, քան 1950 թվականի առաջին հնգամյակում։ Խոշոր նվաճումներ կան ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության ասպարեզում։ Այսպես, օրինակ՝ Արևելյան Չինաստանում, որը մետաքսագործական արդյունաբերության գլխավոր կենտրոնն է, վերջին մեկ տարում ավելի քան կրկնակի չափով ավելացել է մետաքսագործական դազգահների թիվը։

Ավելի քան երբևէ, հստակ ու արդյունավետ են աշխատում երկաթուղիները, որոնք ապահովում են ներքին առևտրի արագ ու լայն ծավալումը։ Կառուցվում են նոր երկաթուղիներ։

Ագրարային ռեֆորմի հետևանքով՝ լիովին վերափոխվել է կյանքը չինական գյուղում։ Ազատագրվելով ֆեոդալական ճնշումից՝ դաշտերի աշխատավորներն ընդլայնում են գյուղատնտեսական արտադրությունը։ 1950 թվականին հացահատիկի բերքը 10 միլիոն տոննայով ավելի էր, քան 1949 թվականին, իսկ բամբակի բերքատվությունն ավելացավ 260 հազար տոննայով։ Չքացավ սովի սպառնալիքը, որից շարունակ տանջվում էր չինական գյուղը։ Չինաստանը, որ անցյալում մեծ քանակությամբ հացահատիկ



և բամբակ էր ներմուծում արտասահմանից, դրա կարիքն այլևս չունի։ Ավելին՝ Չինական ժողովրդական ռեսպուբլիկան օգնության եկավ Հնդկաստանի սովյալ բնակչությանը։ Չինաստանը համաձայնագիր կնքեց՝ Հնդկաստան արտահանելու ավելի քան 500 հազար տոննա հացահատիկ։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը ձեռք բերեց նոր խոշոր հաջողություններ։ Բրնձի, ցորենի և մյուս կուլտուրաների ավելի բարձր բերք է ստացվել, քան անցյալ տարի։ Այսպես, օրինակ՝ ցորենի բերքը անցյալ տարվանից ավելի էր 10 տոկոսով։ Երկրի հարավում և հարավարևելքում, որտեղ հիմնական կուլտուրան բրինձն է, 10—20 տոկոսով շատ բրինձ է ստացվել, քան անցյալ տարի։ Չժեցզյան նահանգի գյուղացիները նշում են, որ իրենք իրենց ամբողջ կյանքի ընթացքում այդպիսի բարձր բերք չէին տեսել։

Պետությունն օգնում է գյուղացիներին՝ բարձրորակ սերմեր, հանքային պարարտանյութեր, բանող անասուններ, գյուղատնտեսական նոր գործիքներ գնելու համար։ Վիթխարի աշխատանք է ծավալվել ոռոգիչ ջրանցքների, ջրամբարների, ամբարտակների և շլյուզների կառուցման ու վերանորոգ-

ման ուղղությամբ։ Այդ աշխատանքների մասշտաբների մասին կարելի է դատել նրանից, որ այս տարի միայն Արևելյան Չինաստանում այդ աշխատանքներում զբաղված է եղել ավելի քան 29 միլիոն մարդ։

Չինաստանի էկոնոմիկայի այդպիսի անշեղ վերելքն անհնարին կլիներ առանց ժողովրդական լայն մասսաների աշխատանքային մեծ խանդավառության։ Չինաստանում լավ հայտնի են արտադրական մրցության այնպիսի աչքի ընկնող առաջավորների անուններ, ինչպես Մուկդենի խառատ Մա Խեն-չան, Շանսիի գյուղացի, աշխատանքային փոխադարձ օգնության խմբի ղեկավար Լի Շուն-դան, շոգեքարշի մեքենավար Լի Յուն, խառատ Չժաո Գո-յուն և շատ ուրիշներ։ Արտադրության առաջավորներն ուշադիր կերպով ուսումնասիրում և լայնորեն օգտագործում են սովետական նորարարների փորձը։ Պ. Բիկովը, Լ. Կորաբելնիկովան, Ֆ. Կովալյովը և սովետական արդյունաբերության մյուս նորարարները մեծ թվով հետևորդներ ունեն Չինաստանում։

Չինաստանի աշխատավորները գնալով ավելի մեծ չափով են վայելում իմպերիալիստական ճնշումից իրենց ազատագրման պտուղները, բարձրանում է աշխատավոր-



ների կյանքի նյութական մակարդակը։ Հյուսիս-Արևելքում (Մանջուրիա) ռեալ աշխատավարձը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, բարձրացավ 40 տոկոսով։ Հյուսիս-Արևելքում գյուղացիների գնողունակությունը վերջին տարում աճել է 33 տոկոսով։ Արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասում արդեն մտցված է սոցիալական ապահովագրություն։ Բարելավվում է բնակչության բուժսպասարկումը։ Մոտ 31 միլիոն երեխաներ ներկայումս սովորում են տարրական ու միջնակարգ դպրոցներում, տասնյակ միլիոնավոր հասակավորներ իրենց անգրագիտությունը վերացնում են երեկոյան դպրոցներում ու խմբակներում։ Մեկ միլիոնից ավելի բանվորներ 1950 թվականին սովորում էին տեխնիկական գիտելիքների բարձրացման դասընթացներում։

Քաղաքական, տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում ձեռք բերված բոլոր հաջողությունների ոգեշնչողն ու կազմակերպիչը փառապանծ կոմունիստական պարտիան է։ Իր 30-ամյակի օրը՝ 1951 թվականի հուլիսի 1-ին, կոմունիստական պարտիան իր շարքերում ուներ 5 միլիոն 800 հազար անդամ։ Իր հայրենիքի

քարգավաճման բոլոր պլաններն ու հույսե-
րը չին ժողովուրդը կապում է կոմունիստա-
կան պարտիայի ղեկավարության հետ, որը
երկիրը տանում է սոցիալիզմի ուղիով։
Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի
համար հսկայական նշանակություն ունի Սո-
վետական Միության բարեկամական, անշա-
հախնդիր օգնությունը։ Այդ օգնությունը
հանդես է գալիս ռեսպուբլիկայի քաղաքա-
կան, տնտեսական և կուլտուրական շինա-
րարության ամենաբազմազան բնագավառ-
ներում։ Սովետական Միությունը Չինաստա-
նին մատակարարում է ամենաարժեքավոր
սարքավորում, հումք և նյութեր՝ զարգացող
արդյունաբերության համար, շոգեքարշեր,
վագոններ և ռելսեր՝ երկաթուղային տրանս-
պորտի վերականգնման համար, տրակտոր-
ներ, կոմբայններ և այլ մեքենաներ՝ գյուղա-
տնտեսության համար։ Սովետական մասնա-
գետները Չինական Ժողովրդական Ռեսպուբ-
լիկային մեծ օգնություն են ցույց տալիս
առաջավոր սովետական տեխնիկան յուրաց-
նելու գործում։ Անընդհատ աճում է սովետա-
չինական առևտրի ծավալը։ Բարեկամական
սերտ և մշտական կապեր են հաստատվել
ՍՍՌՄ և Չինաստանի հասարակական ու



կուլտուրական բազմաթիվ կազմակերպու-
թյունների միջև։
Սովետա-չինական քաղաքական, տնտե-
սական և կուլտուրական համագործակցու-
թյունը խական ծաղկման հասավ 1950
թվականի փետրվարի 14-ին մեր մեծ տերու-
թյունների միջև բարեկամության դաշինքի և
փոխադարձ օգնության պայմանագիր կնքե-
լուց հետո։ Գնահատելով սովետա-չինական
բարեկամության այդ պատմական փաստա-
թղթի նշանակությունը, չին ժողովրդի պան-
ծալի առաջնորդ Մաո Ցզե-դունն ասաց.
«Մի կողմից՝ նա մեզ հնարավորություն է
տալիս ազատ կերպով և ավելի արագորեն
իրագործել վերակառուցումը մեր երկրում։
Մյուս կողմից՝ նա խթան է տալիս ուժեղաց-
նելու ժողովուրդների պայքարն ամբողջ աշ-
խարհում խաղաղության և դեմոկրատիայի
համար, ընդդեմ պատերազմի և ճնշման»։
Իսկապես, սովետա-չինական պայմանա-
գիրը, որ լիովին համապատասխանում է Սո-
վետական Միության և Չինաստանի կառա-
վարությունների խաղաղասիրական ան-
խախտ քաղաքականությանը, տոգորված է
խաղաղության և միջազգային համագործակ-
ցության ջերմ ձգտմամբ։ Պայմանագրի գըլ-
խավոր խնդիրն է՝ թույլ չտալ ագրեսիայի

կրկնումը Ճապոնիայի կողմից, կամ որևէ այլ պետության կողմից, որը կմիանար Ճապոնիային՝ ագրեսիայի ակտերում:

Սովետական ժողովրդի հետ միասին չին ժողովուրդը, ինչպես և խաղաղասեր մյուս ժողովուրդները, հանդես է գալիս Ճապոնիայի հետ հաշտության այնպիսի պայմանագիր կնքելու օգտին, որը համապատասխաներ պատերազմի տարիների դաշնակից տերությունների ընդունած որոշումներին և ապահովեր խաղաղությունը և ճապոնական ագրեսիայից տուժած երկրների անվտանգությունը:

Սովետական Միությունը միջազգային արենայում հետևողական կերպով պաշտպանում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի օրինական իրավունքներն ու շահերը, մերկացնում է ամերիկյան իմպերիալիստների ագրեսիան ընդդեմ չին ժողովրդի:

Չին ժողովուրդը լի է ջերմ սիրով ու երախտագիտությամբ դեպի Սովետական Միությունը, դեպի իր լավագույն բարեկամ, ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը: Արտահայտելով իր ժողովրդի խոհերն ու զգացմունքները, Մաո Ցզե-դունը ընկեր Ստալինի յոթանասունամյակին նվիրված հանդիսավոր նիս-



տում ասաց. «Ճնշողների դեմ մղվող ծանր պայքարում չին ժողովուրդը խորապես և սուր կերպով զգում էր և զգում է ընկեր Ստալինի բարեկամության ամբողջ կարևորությունը»:

Սովետական և չինական ժողովուրդները ուս-ուսի տված պայքարում են նոր պատերազմի սպառնալիքի դեմ, հանուն կայուն և երկարատև խաղաղության: Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ Չինաստանում ստորագրել են 344 միլիոն մարդ, այսինքն՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի համարյա ամբողջ հասակավոր բնակչությունը: Չինաստանը հաստատուն կերպով կանգնած է խաղաղության և դեմոկրատիայի լագերում:

Կ. ՏՅԱՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈԿՏԵՄԲԵՐ ԱՄՍԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի տարեդարձը արտադրական նոր հաջողություններով դիմավորելը՝ սովետական ժողովրդի տրադիցիան է դարձել։*

*2. Բոլշևիկների պարտիան մեր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է։*

*3. ՍՍՌՄ ժողովուրդների կուռ համախմբվածությունը բոլշևիկների պարտիայի շուրջը, ժողովուրդների անհուն սերը մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի նկատմամբ։*

*4. Տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը որպես ՍՍՌՄ-ի տնտեսական հիմք։*

*5. Սովետական ժողովուրդների բարոյա-քաղաքական*



*միասնությունը, բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը՝ սովետական հասարակարգի շարժիչ ուժերն են։*

*6. ՍՍՌՄ-ի աշխատավորների նյութա-տնտեսական դրության անընդհատ բարձրացումը հանդիսանում է սոցիալիստական հասարակարգի զարգացման օրենքը։*

*7. Բնության վերափոխման՝ կոմունիզմի մեծ կառուցումների ստալինյան մարտական պլանի կենսագործումը։*

*8. Սովետական Հայաստանը ՍՍՌՄ ժողովուրդների միասնական ընտանիքում։*

*9. Սովետական Հայաստանի հաջողությունները հետպատերազմյան ժամանակաշրջանում։*

*10. Սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը սոցիալիստական պետության հզորության հետագա բարձրացման հիմքն է հանդիսանում։*

*11. Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը Սովետական Միության յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է։*

*12. Սովետական Միությունը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մեծ դրոշակակիրն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թվի փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին»: *Զեկուցում Սովետների համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարում՝ 1937 թ. նոյեմբերի 23-ին:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին»: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՀամԿ(բ)Պ պատմություն: Համառոտ դասընթաց: *էջ 467—473, 479—482:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ, համառոտ կենսագրություն: *6, 8 և 11 գլուխները:*

ՍՍՌՄ Կոնստիտուցիան:

## II. ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ

*1. ՍՍՌՄ-ի ղեկավար դերը աշխարհի ժողովուրդների պայքարում՝ հանուն կայուն խաղաղության և անվտանգության, հանուն ժողովուրդների խաղաղ համագործակցության:*

*2. Խաղաղության համար համաշխարհային հզոր շարժումը մի նոր հարված է ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ պլաններին:*

*3. Հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու համար Դիմումի տակ ստորագրությունների հավաքումը պատերազմի հրձիգների դեմ հասարակական կարծիքի մոբիլիզացման կարևոր մի-*



*ջոց է, խաղաղության նոր, ակտիվ կողմնակիցների ներգրավման կարևոր միջոց:*

*4. Խաղաղության կողմնակիցների ճակատի միասնությունը և կազմակերպվածությունը, ակտիվ գործողությունները սպառազինությունների մրցավազքի դեմ՝ կայուն և երկարատև խաղաղության համար մղվող պայքարի անհրաժեշտ պայմաններն են:*

*5. Արտասահմանյան կոմունիստական պարտիաների առաջնակարգ դերը կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում:*

*6. ՍՍՌՄ-ի՝ խաղաղության անպարտելի ճակատի հենարանի հզորության ամրապնդման համար անձնվիրաբար աշխատելը՝ սովետական բոլոր հայրենասերների սրբազան պարտքն է:*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ»: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով:*

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը խաղաղության Պակտ կնքելու մասին: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 29:*

Պայքար խաղաղության համար, թվեր և փաստեր: *«Ագիտատորի բլոկնոտ» 1951 թ. № 17, էջ 26—34:*

Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսի նյութերը: *«Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 13:*

խաղաղության կողմնակիցների կոնֆերանսները»: *«Պրավդա»-ի 1951 թ. սեպտեմբերի 6-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1951 թ. սեպտեմբերի 7-ի համարում։*

Հայ ժողովրդի միասնական կամքը: *«Ս. Հ.»-ի 1951 թ. սեպտեմբերի 13-ի առաջնորդողը։*

Միջազգային տեսություն: *«Ս. Հ.»-ի 1951 թ. սեպտեմբերի 16-ի համարը։*

Ընդդեմ իմպերիալիստական ագրեսորների մեքենայությունների: *«Պրավդա»-ի 1951 թ. սեպտեմբերի 20-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 21-ի համարում։*

Աշխատանքային սխրագործություններով ամրապնդենք խաղաղությունը: *«Ս. Հ» 1951 թ. սեպտեմբերի 25։*

## III. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*1. Տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու և գերազանց որակի արտադրանք տալու համար ծավալված սոցիալիստական մրցությունը՝ սովետական մարդկանց բոցաշունչ հայրենասիրության ցայտուն արտահայտությունն է։*

*2. Տարեկան պլանը նյութական և դրամական միջոցների նվազագույն ծախսմամբ կատարելը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը արտադրության*



*բոլոր աշխատողների տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրն է։*

*3. Արդյունաբերության տեմպի անընդհատ զարգացումը, բարձրորակ արտադրանքի թողարկումը, խնայողության խստագույն ռեժիմը՝ նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարման հիմնական պայմաններն են։*

*4. Արդյունաբերության բոլոր բանվորների մասնակցությունը նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությանը և ստանձնած պարտավորությունների ժամանակին ու բարձր որակով կատարումը՝ 1951 թ. պետական պլանների լավագույն ձևով կատարման երաշխիքն է։*

*5. Լայն ծավալենք սոցիալիստական մրցությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկայի յուրացման և լրիվ օգտագործման, արտադրանքի ավելացման, նրա որակի լավացման և ինքնարժեքի իջեցման համար։*

*6. Արտադրության առաջավորների և նորարարների փորձի մասսայական արմատավորումը, բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, ծառայողների որակավորման անընդհատ բարձրացումը, արտադրության կուլտուրայի բարձրացումը՝ նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման կարևոր պայմաններն են։*

7. Ինչպես են կատարում մեր գործարանը, ցեխը, բրիգադը և առանձին բանվորներ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի առթիվ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Մրցությունը և աշխատավորների աշխատանքային վերելքը»։ *Երկեր, հատոր, 12, էջ 122—126։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությունում։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ. էջ 602—617։*

Բոլշևիկորեն ղեկավարել սոցիալիստական մրցությունը։ *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 31։*

Տեխնիկան օգտագործել արվեստի բոլոր կանոններով։ *«Պրավդա»-ի 1951 թ. սեպտեմբերի 14-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.».-ի սեպտեմբերի 15-ի համարում։*

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Մ. ԳՈՐԿԻ.— Երկեր, *9-րդ հատոր։ Հատորում զետեղված են ռուս մեծ գրողի «Իմ համալսարանները» և «Արտամոնովների գործը» երկերը։ 554 էջ, գինը 13 ռ. 20 կոպ.։*

Ն. ՕՍՏՐՈՎՍԿԻ.— «Ինչպես էր կոփվում պողպատը»։ *446 էջ, գինը 10 ռուբ. 15 կոպ.։*

ԴԱՆԻԵԼ ԴԵՖՈ.— «Ռոբինզոն Կրուզո»։ *727 էջ, գինը 16 ռ. 75 կոպ.։*

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ.— Երկերի ժողովածու, *3-րդ հատոր։ Ժողովածույում զետեղված են հայ մեծանուն գրողի պատմվածքները, արձակ պոեմները, լեգենդները, զրույցները, հեքիաթները և առակները։ 328 էջ, գինը 13 ռ. 65 կոպ.։*

ԷՄ. ԿԱԶԱԿԵՎԻՉ.— «Գարունը Օդերի ափին». *Ստալինյան մրցանակի արժանացած վեպ։ 569 էջ, գինը 16 ռ. 20 կոպ.։*

ՍԵՐԳԵՅ ԲՈԶԱՆՈՎ.— «Տրավկայի արկածները»։ *164 էջ, գինը 5 ռ. 95 կոպ.։*

ՄՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ.— «Հերոսների մոտ»։ *Ժողովածույում զետեղված են մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային դաշտերի Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների մասին ակնարկները։ 202 էջ, գինը 4 ռուբ.։*

ԻՎԱՆ ԿՈԺԵԴՈՒԲ.— Ծառայում եմ Հայրենիքին:

317 էջ, գինը 11 ռ. 10 կոպ.:

ԷՆՎԵՐ ՄԱՄԵԴԽԱՆԼԻ.— Բաքվի գիշերները: 196

էջ, գինը 3 ռ. 30 կոպ.:

Օգնություն քաղաքացիների ունկնդիրներին: 253 էջ,

գինը 4 ռ. 25 կոպ.:

ակադեմիայի

Հայկական ՍՍՌ Գիտությունների լույս է տե-

Լեզվի ինստիտուտի հրատարակությամբ

սել.

Լեզվաբանական և նայագիտական հետազոտու-

թյուններ. Հատոր առաջին: 162 էջ, գինը 11 ռուբլի:

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՎՖ 04850 Պատվեր № 827 Տիրաժ 9250

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,
Երևան

